## Թուրք նախարարները Լոնտոնի մէջ

Երկուշաբթի օր Լոնտոն հասան Թուրքիոյ վարչապետը՝ Ատնան Մենտերէս եւ արտաքին նախարարը՝ Ֆուատ Քէօփրիւլիւ։

Քաղաքական շրջանակներու մէջ մեծ կարեւորութիւն կ'ընծայէին այս այցելութեան, որ կապ ունի Միջին Արեւելքի պաշտպանութեան ծրագրին եւ ուրիշ հրատապ խնդիրներու հետ։

Լոնտոնի թերթերը ամբողջ սիւնակներ կը նուիրեն այս այցելութեան։ Թուրք նախարարները ներկայ պիտի ըլլան բազմաթիւ հանդիսութեանց։ Թագուհին ալ ունկնդրութեան պիտի ընդունի երկու հիւրերը։

Ինչպէս կը բացատրէ միջազգային մամուլը, Լոնտոնի մէջ Թուրքիան կը նկատեն բնական միջնորդը Արեւմուտքի եւ արաբական երկիրներուն միջեւ. հետեւաբար վճռական դեր մը կ'ընծայեն անոր, Միջին Արեւելքի պաշտպանութիւնը կազմակերպելու համար։ Գլխաւոր խոչընդոտը այն է որ, Թուրքերը նոյնքան կարեւորութիւն կու տան իրենց եւրոպական եւ ասիական սահմաններու ապահովութեան։ Թրակիոյ պաշտպանութիւնը Թուրքիոյ գլխաւոր հոգերէն մէկը եղած է միշտ։ Արդ, ռազմագէտներ դիտել կու տան թէ անհրաժեշտ է Եուկոսլաւիոյ գործակցութիւնը՝ պալքանեան ամուր ճակատ մը կազմելու համար։ Բայց Եուկոսլաւիա գործակցելու տրամադիր ըլլալով հանդերձ, կը խուսափի զինակցութենէ։

Ուրիշ դժուարութիւն մը եւս վարանում կը պատճառէ Անգարայի։ Միջին Արեւելքի պաշտպանութիւնը ամէն բանէ առաջ կը պահանջէ արաբական պետութեանց, եւ մասնաւորապէս Եգիպտոսի հաւանութիւնը։ Ուստի, Թուրքերը չեն ուզեր որեւէ յանձնառութեան տակ մտնել, մինչեւ որ կարգադրուի անգլեւեգիպտական վէճը, — Սուտան եւն.։

Իրազեկներ դիտել կու տան թէ անգլեւթուրք յարաբերութիւնները ազդուած են նաեւ Միջերկրականի անգլեւամերիկեան մրցակցութիւններէն։

Ներկայիս Ատլանտեան կազմակերպութեան մէկ հրամանատարութիւնը հաստատուած է Իզմիրի մէջ, իսկ Անգլիացիները տակաւին չեն կրցած ապահովել Թուրքիոյ գործակցութիւնը՝ առժամեայ բանակատեղի մը հաստատելու համար Կիպրոսի մէջ։ Այս նոր կեդրոնին գործը պիտի ըլլայ ծրագիրներ մշակել Միջին Արեւելքի պաշտպանութեան համար։

Լոնտոնի թերթերուն տեղեկութեանց համաձայն, Պ. Պ. Չըրչիլ եւ Իտըն պիտի պարզեն Անգլիոյ հետեւեալ բաղձանքները.— 1. Միջին Արեւելքի եւ Պալքաններու հրամանատարութիւնները սերտ կապ ունենալու են իրարու հետ։— 2. Թուրքիա բաւարար թիւով զօրաբաժիններ պիտի տրամադրէ Միջին Արեւելքի հրամանատարութեան (անգլիական).— 3. Անգլիա զօրաւոր աջակցութիւն մը պիտի ընծայէ Միջին Արեւելքի պաշտպանութեան համար (մասնաւորապէս օդանաւային), եւ անգլեւամերիկեան հիւլէական սպառազինութիւնը պիտի տրամադրուի այս հրամանատարութեան եւն.։

Գահիրէի թերթերը կը գրեն թէ Թուրք դեսպանը մօտերս պիտի առաջարկէ եգիպտական կառավարութեան՝ ժողով մը գումարել, քննելու համար պաշտպանութեան խնդիրը։ Այս ժողովին պիտի մասնակցին միայն Միջին Արեւելքի երկիրները։ Պիտի չհրաւիրուին ոչ Անգլիա, ոչ Ամերիկա, ոչ ալ Ֆրանսա, որպէսզի միւսները կարենան ազատօրէն խորհրդակցիլ։

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԹԱՏՐՈՆԻ ՎԵՐՋԻՆ ԲԱՆԱՍՏԵՂԾԸ Gaston Baty, մեռաւ երկուշաբթի օր, 67 տարեկան։ Այս վաստակաւոր արուեստագէտը Փիթոյեւի, Տիւլէնի եւ Ժուվէի հետ կազմած էր «Զորսերու խմբակը», որուն վերջին մնացորդն էր։ Տնօրէնն էր «Aix en Provence»ի թատերական կեդրոնին։ Յոգնած ծանր աշխատանքներէ Պաթի զոհ գնաց ուղեղային արիւնախոռումի։

Խ. ՄԻՈՒԹԻՒՆԸ 300—350 սուզանաւ ունի, համաձայն Ֆրանսացի ծովակալ Պարժոյի, որ վերջերս հրամանատար նշանակուեցաւ Հնդկաց Ովկէանոսի նաւատորմին։ Իր կարծիքով, ապագայ պատերազմը պիտի տարածուի մինչեւ Ծայր. Արեւելքի ջուրերը։

ԱՄԵՐԻԿԵԱՆ ՕԴԱՆԱՒ մը զարնուած է Ռուսերուն կողմէ, Ծայր. Արեւելքի ջուրերուն մէջ, այն ամբաստանութեամբ թէ բռնաբարած էր խորհրդային տարածութիւնը։

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

### Փարիզի մէջ

Հոկտեմբեր 25ին, շաբաթ իրիկուն, Ե. Թագմասին քաղաքապետարանի սրահը։

Տոմսերու համար դիմել.— Ճաշարան Արթիւր, Place des Fêtes, Նպարավաճառ Բիւզանդ, Պէլվիլ, զրատուն Հրանդ Սամուէլ, Մ. Պարսամեան եւ Բալուեան։

***

### Մարսէյլի մէջ

Կը տօնուի մօտ օրէն, բացառիկ պատրաստութեամբ։

×

### Կրընոպլի մէջ

Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3.30ին, Sacré Coeurի սրահին մէջ։

Կը նախագահէ ընկեր ՍԻՐԷՆԿԻՒԼԵԱՆ

Կը խօսի ընկեր Ս. ՍԻՍԼԵԱՆ

Գեղարուեստական խնամուած յայտագիր։

Մանրամասնութիւններ տեղին վրայ, մասնաւոր յայտարարութեամբ։ Կը խնդրուի ճշդապահ ըլլալ։

Մուտքը ազատ է

×

### Լիոնի մէջ

18 Հոկտ. Շաբաթ երեկոյ, Գ. Թաղապետարանի սրահը։

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Լիոնի Վարանդեան կոմիտէի։

Նախագահ ընկեր ՍԱՐԳԻՍ ԳԱԼՈՒՍՏԵԱՆ

Կը խօսի ընկեր ԽԱՉԻԿ ՄԿՐՏԻՉԵԱՆ

Խօսք կ'առնէ ընկերվարականներու ներկայացուցիչը։

Գեղարուեստական ճոխ բաժին։

Մուտքը ազատ է։

×

### Տէսինի մէջ

Հոկտեմբեր 19ին, կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Հ. Յ. Դ. Տան մէջ։

Կը նախագահէ ընկեր ՄԻՍԱՔ ՄԻՐԶԷ

Կը խօսի ընկեր ԽԱՉԻԿ ՄԿՐՏԻՉԵԱՆ

Կը մասնակցին Հ. Յ. Դ. Նոր Սերունդը, Կապոյտ Խաչի մասնաճիւղը եւ իր դպրոցի հոգաբարձութիւնը։

Գեղարուեստական ճոխ բաժին.— Խմբերգ, մեներգ, ուղերձ, արտասանութիւն, կենդանի պատկեր, Հայկական պարեր, Նոր Սերունդի Սանուհիներուն եւ դպրոցի աշակերտներուն կողմէ, ղեկավարութեամբ Տիկին Գ. Փափազեանի։

Մուտքը ազատ է

×

### Ալֆորվիլի մէջ

Հոկտեմբեր 26, կիրակի գիշեր։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ, բոլոր ընկերները այս ուրբաթ ժամը 20.30ին, 78 rue Rabelaisի դպրոցին սրահը։ Կարեւոր օրակարգ։ Բացակաները նկատի պիտի առնուին։

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահարոնեան» խումբի հերթական դասախօսութիւնը այս հինգշաբթի ժամը 21.30ին, Ազգ. Տան մէջ (32 rue de Trévise)։ Նիւթը՝ «Դաշնակցութեան պատմութիւնը»։

ՄԱՐՍԷՅԼ.— Սէն Ժէրոմի «Հայաստան» ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ ընկերները այս շաբաթ ժամը 21ին, սովորական հաւաքատեղին։

ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆԻՆ հերթական հաւաքոյթը այս չորեքշաբթի երեկոյ ժամը 9ին, Քառէ սրճարանին վերնայարկը։ Պիտի խօսի պատ. ՍԻՍԼԵԱՆ, նիւթ ունենալով Լեոն Տոլստոն եւ իր քրիստոնէական փիլիսոփայութիւնը։ Մուտքը ազատ է։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Փարիզի Հայոց Աղքատախնամ ընկերութեան տարեկան մեծ պարահանդէսը Նոյեմբեր 30ին, Salle George V.ի մէջ։



Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

